բած է գիւղացի զանգուածներուն մէջ։ Գիւղացիները ճնշելով տագնապը չլուծուեցաւ։ Պէտք է վերջ տալ այդ ճնշումին եւ բարձրացնել ցորենի գինը։

Համայնավար կուսակցութեան ծոցին մէջ լուրջ տարակարծութիւններ կային գիւղացիներու հանդէպ հետապնդուելիք քաղաքականութեան մասին։ Շատեր կողմնակից էին դադրեցնել կռիւը կուլակներուն (հարուստ գիւղացի) դէմ եւ գիւղացիները թողուլ իրենց հաճոյքին, քանի որ ատիկա է միակ միջոցը տագնապը լուծելու։

Գործակցականներուն առջեւ խօսած ճառին մէջ Ռիկով դատապարտեց վարչական միջամտութիւնը գործակցականի գործերուն, ու դիտել տուաւ որ եթէ ժողովուրդը գործակցականներուն նայի իբրեւ դիւանակալական հիմնարկութիւններ, վտանգը ակներեւ է։

Ռիկովի երկու ճառերն ալ արտայայտութիւն մը կը նկատուին իր խմբակին՝ ընդդէմ Ստալինի։

∴ Խորհրդային կառավարութիւնը շարք մը հրամանագրեր հրատարակեց, որոնց շնորհիւ կը յուսայ դիւրացնել ցորենի նոր հունձքին յանձնումը։ Ցորենի, հաճարի, վարսակի եւ չոր խոտի լիպրային վրայ, կառավարութեան կողմէ ցարդ վճարուած գները միջին 100ին 20 կոպէկի յաւելում մը պիտի կրեն։ Այլեւս բռնագրաւում եւ գիւղացիներուն դէմ հետապնդում տեղի չպիտի ունենայ։

∴ Իտալական «Գուլիէլմօ-Փէլտինէլլի» շոգենաւը Վլատիվոսթոկէն անցաւ՝ ուղղուելով դէպի Ռուսիա։ Ասիկա առաջին նաւն է որ Եւրոպայէն ցորեն կը փոխադրէ։

## Պատերազմը օրէնքէ դուրս

Ուաշինկթընէն կը հեռագրեն թէ պատերազմը օրէնքէ դուրս հռչակելու մասին 14 պետութեանց միջեւ կնքուելիք դաշինքը պիտի ստորագրուի հաւանաբար Փարիզի մէջ, Օգոստոսի վերջերը։ Միացեալ Նահանգներու արտաքին Նախարար Քէլլոկ դէպի Ֆրանսա ճամբայ պիտի ելլէ Օգոստոս 22ին։ Եւրոպական պետութեանց ուրիշ արտաքին Նախարարներ եւս խոստացած են Փարիզ գալ՝ ներկայ ըլլալու համար ստորագրութեան արարողութեան։

Նախագահ Քուլիճ հաւանած է որ այս պատմական դաշնագիրը ստորագրուի Փարիզի մէջ. եւրոպական մայրաքաղաք մը աւելի յարմար կը նկատուի, եւ թէ արտաքին Նախարարներու խորհրդաժողով մը աւելի եւս պիտի բարձրացնէ դաշինքին արժէքը։

Ճափոնի եւ Չեխոսլաւաքիոյ կառավարութիւնները եւս ընդունեցին ամերիկեան առաջարկը՝ պատերազմը օրէնքէ դուրս հռչակելու դաշինքին մասին։

## Ընտրական պայքարը Յունաստանի մէջ

Վէնիզէլոս երէկ մեկնեցաւ Մակեդոնիա՝ ընտրական պայքար մղելու համար։ Ազատական կուսակցութեան եւ ռամկավար միութեան միջեւ ընտրական գործակցութեան բանակցութիւնները վերջացան եւ Վէնիզէլոսի պայմանները ընդունուեցան։ Փափանասթասուի կուսակցութիւնը 12 թեկնածու պիտի ունենայ Մակեդոնիոյ եւ Թրակիոյ, երեք ալ հին Յունաստանի մէջ։

Զօրավար Քոնտիլիսի կուսակցութիւնը եւս կը փափաքի գործակցիլ Ազատականներուն հետ եւ 28 աթոռ կը պահանջէ, ինչ որ պիտի չտրուի հաւանաբար, քանի որ իր ներկայացուցած ուժէն վեր է այդ թիւը։

Միխալաքոփուլոս կը գործակցի Վէնիզէլոսի հետ, ու կը թուի թէ հինգ աթոռ պիտի տրուի անոր կուսակցութեան։ Քաֆանտարիս վերապահ դիրք կը բռնէ։ Ազատականներու հետ իր գործակցութիւնը խնդրոյ առարկայ չէ եւ գաղափարակից խմբակցութիւններու հետ ուրիշ ճակատ կը կազմէ։

Ընդդիմադիր շարքերուն մէջ ժողովրդական կուսակցութիւնը՝ որուն պետն է Ցալտարիս, կը գործակցի զօր. Մէթաքսասի Ազատամիտ կուսակցութեան եւ ուրիշ հակավէնիզէլոսեաններուն հետ։

## Հայ կնոջ մը արկածը

Լիոնէն կը գրեն մեզի Յուլիս 19 թուականով.—

Այս առաւօտ ժամը 9ին, երբ Տիկ. Կիւլիւզար Տէրտէրեան կաթ կը տաքցնէր իր զաւկին համար, ալքոլէ լամբարի մը վրայ, ալքոլը յանկարծ կը բռնկի եւ պայթում առաջ կու գայ։ Դժբախտ կինը այրուածքներ կը ստանայ երեսին ու մազը կը բռնկի։ Օգնութեան աղաղակներուն վրայ ներս կը վազէ յարակից սենեակը բնակող Պ. Կարապետ Եղիշէեան, որու ջանքերով կարելի կ՚ըլլայ առաջքն առնել կրակին որ սկսած էր տարածուիլ սենեակին մէջ։ Տիկին Կիւլիւզար շուտով կը փոխադրուի Օթէլ Տիէօ հիւանդանոցը, ուր կը դարմանուի. վիճակը ծանր չէ, բայց մազին առջեւի մասը այրած է։

## Լէօվէնշթայնի գաղտնիքը չէ լուսաբանուած

Քալէ հասան Լէօվէնշթայնի երկու աներձագները՝ միլիոնատէրին մարմինը դագաղի մէջ դնելով Պրիւսէլ փոխադրելու համար։

Այժմ դիակին գտնուելովը բոլորովին անհետացած են Լէօվէնշթայնի խորհրդաւոր անհետացման շուրջ հիւսուած առասպելները։ Սակայն տակաւին գաղտնիքը կը մնայ գաղտնիք. Լէօվէնշթայն ոճիրի՞ կամ արկածի՞ զոհ է թէ անձնասպան եղած է։ Զանազան օդանաւերով, նոյնիսկ իր սեփական օդանաւով կատարուած մէկէ աւելի փորձերը ցոյց տուին թէ անկարելի է բանալ դուրսի դուռը, երբ օդանաւը արագօրէն կը թռչի։ Հետեւաբար անկարելի պիտի ըլլայ երեւան հանել մահուան բուն պարագաները։

∴ Լէօվէնշթայնի ընտանիքը 10,000 ֆրանք տուաւ ագատարար Պօկրանի՝ իբրեւ առաջին վարձատրութիւն. իր ընկերներուն ալ դրամական նուէրներ եղան։

∴ Ֆրանսացի դատական բժիշկ տոքթ. Փօլ երէկ մանրակրկիտ դիազննութիւն կատարեց՝ հասկնալու համար թէ միլիոնատէրը թունաւորուա՞ծ է կամ ոճիրի զո՞հ գացած է։

∴ Միլիոնատէրին ձիերը աճուրդով պիտի ծախուին Իրլանտայի, Անգլիոյ եւ Ֆրանսայի մէջ, անմիջապէս որ օրինական ձեւակերպութիւնները կատարուին։

Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Ալֆորվիլի եւ Պէլվիլի ենթակոմիտէներու վարչութիւնները, վաղը երկուշաբթի իրիկուն ժամը 7.30ին, 33bis Rue Louis Blanc անկիւնի սրճարանը մէթրօ Louis Blanc։

## ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ 31ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ՇԱՎԻԼԻ ՄԷՋ, ԿԻՐԱԿԻ 29 ՅՈՒԼԻՍ

Մանրամասնութիւնները մօտ օրէն

## ԴԱՇՏԱՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած՝ Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի մասնաճիւղին կողմէ 5 Օգ. կիր. առաւօտէն մինչեւ երեկոյ, Քլամառի անտառին մէջ

ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄՕՏ ՕՐԷՆ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Հայկանուշ Կէնճեան եւ զաւակները Սահակ, Կարօ եւ Խնկիկ Կէնճեան եւ պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝ ՓԱՆԻԿ ԿԷՆՃԵԱՆի տխուր մահուան առթիւ։

Լիոն 19 Յուլիս 1928

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը՝ այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Ռոստոմի սրահը 131 Fbg. du Temple, Belleville. Օրակարգ. հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

## ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ՈՂԻՄՊԻԱԿԱՆԸ ԵՒ ԳԵՐՄԱՆՆԵՐԸ

Ամսթերտամի համաշխարհային իններորդ ողիմպիականին կը մասնակցին գրեթէ բոլոր ազգերը: գերմանացիները՝ որոնք 1924ին փարիզի մէջ չկրցան մասնակցիլ ողիմպիականին, այսօր Ամսթերտամի մէջ գլխաւոր դեր մը կը կատարեն: Ամբողջ աշխարհ՝ եւ մասնաւորաբար եւրոպական մամուլը երկար սիւնակներ կը նուիրէ անոնց անմրցելի կազմակերպութեան վրայ: եւրոպական թղթակիցներ գերմանիա կը յաճախեն մասնաւոր եւ ճըշգրիտ տեղեկութիւններ ստանալու եւ հիացումով կը գրեն գերման մարզիկներու մեթոտներու մասին: Անոնք վեր կը հանեն անոնց կազմակերպիչներուն եւ մարզիկներուն կատարած մեծ ջանքերը, մասնաւորաբար կարգապահութիւնը մարզադաշտին վրայ: մէկ խօսքով, անոնք այսօր կազմակերպուած մեծ ուժ մը կը ներկայացնեն, երկու-երեք տարի առաջուանէն անհամեմատ բարձր: 1932ի ողիմպիականին առաջին տեղը պիտի գրաւեն: գերմանները մասնաւորաբար զօրաւոր են աթլէթիքի ճիւղին մէջ: Ամսթերտամի աթլէթիքի մրցումները տեղի պիտի ունենան Յուլիս 29էն Օգոստոս 5:

Գ. Կ.

## ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐԸ

ԱՐԱԲԻՆ ՎՐԷԺԸ.— Արաբ մը որ ամուսնացած էր Ֆրանսուհիի մը հետ, իր կնոջ ընկերակցութեամբ պտոյտի գացեր էր Յու-...

### ՖՐԱՆՍՈՒՀԻ ՄԸ 100,000 ՖՐ.Ի ԱՐԺԷԹՈՒՂԹ ԿԸ ՆՈՒԻՐԷ ՀԱՅ ՈՐԲՈՒՀԻՆԵՐՈՒՆ

Բարեգործականի գրասենեակէն կը հաղորդեն մեզի.—

Ազնուասիրտ Ֆրանսուհի մը, որ իր անունին մինչեւ մահը գաղտնի պահուիլը կը փափաքի, սիրուն նամակով մը կը հաղորդէ որ, «բուռն համակրանք մը ունենալով հայ ժողովուրդին հա-...

...որուն մէջ 200.000 ֆրանք կար: Տնօրէնը օգնութիւն կանչելու ատեն իսկ չունեցած, գողերը փախան: Ոստիկանութիւնը կը փնտռէ զանոնք:

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ՀԱՅԵՐԸ ՖԼԱՎԻԱՔԻ ՄԷՋ

ՓՐԻՎԼԱ, 24 Յուլիս, (Թղթ. «Յառաջ»ի).— Ֆլավիաք Փրիվայէն 7 քիլոմեդր հեռու, գեղեցիկ եւ մաքուր գիւղաքաղաք մըն է: Մէկ հատիկ մետաքսի հսկայ գործարանին մէջ կը գործեն բազ-...

...մանաւանդ որ իր ինքնութիւնը վկաներով չհաստատէ, չի կրնար այլեւս կնոջ մը սենեակը մտնել:

Այս ազատ երկրին մէջ ամէն ինչ ընելու ազատութիւնը ունինք ըսողները՝ կրնան անգամ մը այցելել այս գործարանը եւ գաղափար կազմել:

*** Անցեալ շաբթու ունեցանք հարսնիք մը եւ նշանտուք մը:

*** Անցեալ օր երբ կառքի կը սպասէի, հեռուէն նշմարեցի խումբ մը հայ մանուկներ, որոնք երգե-...

...մասին, ինչո՞ւ այսքան անտարբեր է Թուրք փոքրամասնութեանց իրաւունքներուն հանդէպ:

...Այս առթիւ յիշենք «Ռօտանաշթինա» ընկերութեան ծայրայեղութիւնները: Այս միութիւնը, որ իբր թէ կազմուած է հայրենասիրութիւնը բոլշեւիկեան ազդեցութենէն զերծ պահելու եւ ազգային ոգին հրահրելու համար, անլուր բաներ կ'ընէ Իսլամներուն, մզկիթներուն եւ ընդհանրապէս թուրքերէն խօսողներուն դէմ:

Թրակիոյ ընկերութեան հրապարակութիւնները, միթինկները եւ ճառերը չեն դադրիր շատ մեծ ազդեցութիւն գործելէ մեր յարաբերութեանց վրայ: Կրնան...

### ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ՓՕՆ Տ'ՕՊՆԱ 23 Յուլիս:— Շնորհիւ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէին, Խանասորի 31րդ տարեդարձը տօնուեցաւ Օպնայի քաղաքապետարանի սրահին մէջ. Յուլիս...

...Ցաւալի է որ ծնողները չեն հսկեր իրենց զաւակներուն վրայ, թէ՛ լեզուի եւ թէ՛ բարեկրթութեան տեսակէտով:

Այս առթիւ, նորէն չարաչարուած հարցումը — ինչո՞ւ չեն բանար հայրենիքի դռները...

Գ. ՍԵԹԵԱՆ

...էր հիւրասիրուեցանք Պ. Լուտէր Սէֆէրեանին տունը, ուր սեղան մը շտկուեցաւ անմիջապէս: Իւրաքանչիւր ընտանիք կը ներկայացնէր Թուրքիոյ զանազան մասերը եւ սակայն սեղանին շուրջ հայերէն լեզուն մեզ կը կապէր իրարու հետ, իբրեւ մէկ ընտանիքի անդամներ: Եղան բաժակաճառեր, եւ յուսադրիչ խօսքեր օրուան ցաւերուն առթիւ: Մէկը կ'ուխտէր ոչխար մը մատաղ ընել, եթէ բախտ ունենայ հայկական հող մը մտնելու...: Ակամայ բաժնուեցանք կէս գիշերին:

Ղ. Պագրճեան

### ՀԱՅԵՐԸ ՌՕԱՆ ՄԷՋ

ՌՕԱՆ (Լուառ), 23 Յուլիս, (Թղթ. «Յառաջ»ի).— ...

"ՅԱՌԱՋ,,Ի ԹԵՐԹՕՆԸ (54)

# ԼԱԶԱՐԻՆԱՅԻ ՈՃԻՐԸ

## ԻՐԱՐՈՒ ԵՏԵՒԷ

Գարիգափասի այս փոքրիկ ...ազակախումբը, մինակը չպիտի կրնար վրդովել շրջանը: Բայց ...

...մերկ պտտի դաշտին մէջ, իր ճամբան փնտռէ:

Երբ դէպքը իմացուեցաւ, ջոկատ մը կոխեց փափարանձայի ...

...կալուածատէրերէն մէկը Րուսի պէյ, զինուորներու ընկերակցութեամբ Սէքլիսա կ'երթար, երբ յարձակման ենթարկուեցաւ ...

(Շար.)

